1917 № 22—ՅՈՒՆԻՍԻ 11 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՕՐԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ



10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Աբասաբադեան հրապար. № 7·
Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են մեկ ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՔԱՂ. ՆՈՐ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԻ ԱՌԹԻՒ

Յեղափոխութեան ույժով նուաճուած ազատութիւնը նոր իրաւակարգի հիմնաքարն է։

Ժողովրդապետական սկզբունքներով է պսակուած այդ իրաւակարգը. նրա առաջ չէյողքանում են հին ռէժիմի ստեղծած դասակարգային և այլ տեսակ բաժանմունքներ և արտօնութիւններ։

«Քաղաքացի» կոչումն համահաւասար իրաւունքներ է տալիս բոլորին՝ անկախ նրանց դիրքին, սեռին ու դասակարգին։

Այժմ մնում է, որ ամեն մի քաղաքացի պարզ կերպով հասկանայ իւր իրաւունքները և օգտուի այդ իրաւունքներից։

Զը նայած պետութեան ծանր դրութեան՝ մի կողմից կռիւ դրսի թշնամիների հետ, միւս կողմից ներքին խառնաշփոթութեան, այնուամենայնիւ ստեղծագործական կեանքն առաջ է ընթանում։ Կեանքի մէջ ձեււորւում են նոր կարգեր, հասարակական ու պետական հաստատութիւնները վերաստեղծւում և վերակազմւում են նոր հիմունքների վրայ՝ ըստ ժամանակի ոգու և պահանջների։

Այժմ՝ առաջին հերթին դրուած է քաղաքային ինքնավարութիւնների վերափոխումն նոր իրաւասուների ընտրութեամբ։

Կովկասի քաղաքներում այդ նպատակով սկսուել են նախապատրաստական աշխատանքներ և կատարւում են առանձին արագութեամբ։

Առանձին հետաքրքրութիւն և եռանդ նկատւում է Թիֆլիսի ազգաբնակութեան մէջ։

Հրատարակուած ընտրական օրէնքը լայն դռներ է բանում ընտրողների առաջ։ Ընտրութեան մասնակցելու համար այլեւս չկան առաջուայ սահմանափակումները՝ կախուած ընտրողի ծագումից, նիւթական կարողութիւնից և զանազան այլ հանգամանքներից. ամեն մի քաղաքացի՝ լինի նա ունեւոր թէ չունեւոր, լինի նա ազնուական թէ հասարակ մշակ, լինի նա այր-մարդ թէ կին, լիակատար իրաւունք ունի ընտրելու և ընտրուելու։

Նոր օրէնքը միայն երեք պահանջ է դնում, մէկը՝ որ ընտրութեան մասնակցողը լինի ոչ պակաս 20 տարեկան հասակից, երկրորդ՝ որ ընտրական շրջանում ունենայ բնակավայր, իսկ թէ որքան ժամանակ է, որ ունի բնակավայր—այդ նշանակութիւն չունի, և երրորդ՝ որ նա

գրկուած չը լինի դատարանի վճռով որոշ իրաւունքներից։

Նոր օրէնքը նախատեսել է ընտրողների փոքրամասնութեան իրաւունքների ապահովութիւնը և այդ նպատակով մտցուած է համեմատական ընտրութեան եղանակը, ինչպէս այդ վաղուց գործադրւում է Եւրոպա՝ Բելգիայում և ուրիշ տեղերում։

Շնորհիւ ընտրութեան այդ եղանակի՝ ամեն մի կուսակցութիւն, ամեն մի ազգ, ամեն մի խմբակցութիւն հնարաւորութիւն ունի ըստ իւր ընտրողների թուի ներկայացուցիչներ անցկացնել։

Անհատական մասնակցութիւնը նոր օրէնքով կորցնում է իւր նշանակութիւնը. ընտրութեանը մասնակցելու համար պէտք է յարել այս կամ այն կազմակերպուած խմբակցութեան—լինի դա կուսակցական, անկուսակցական, թէ ազգային—միևնոյն է։

Քաղաքային ընտրութիւնները Թիֆլիսում կատարուելու են առաջիկայ յուլիսի 15-ին։ Ժամանակ շատ չէ մնացել։

Այս ընտրութիւնները առաջին փորձն է ազատութեան օրերին, երբ մեր ժողովուրդը պէտք է ցոյց տայ իւր քաղաքական հասունութիւնը։

Անհրաժեշտ է, որ ամեն մի քաղաքացի լաւ ըմբռնի ընտրութիւնների նշանակութիւնը. լաւ գիտակցի, որ կէս միլիոնից աւելի քաղաքի ազգաբնակութեան կեանքի համար քաղաքային ինքնավարութիւնը կեանքի գործօն է, նրա ձեռքումն է քաղաքի ներքին կեանքի ղեկը։ Աններելի կը լինի անտարբեր մնալը այս ընտրութիւններին։ Պէտք է կազմակերպուել և կազմակերպուած մասնակցութիւն ունենալ։

Թող ամեն մի քաղաքացի չը զլանայ կատարել իւր քաղաքացիական պարտականութիւնը դրական մասնակցութեամբ առաջիկայ ընտրութիւններին։

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

# ԵՐԱՇԽԻՔ ՉԷ

Հայի կեանքը հազար ու հազար տարիների պատմութեամբ հաստատել է թէ հայի դրութիւնն այլ է, թէ նրա ճակատագիրը բացառիկներից է։ Ուրիշ եզրակացութեան յանգել չես կարողանում, երբ տեսնում ես սկզբից մինչև վերջ, Դարեհ Վշտասպեայի դարից մինչև այսօրուայ օրը, միալար, յարատև մի մտքի, մի հոգսի, մի անհուն վախի սոսկալի ճնշումը այդ ազգի վրայ—ինչպէս գոյութիւն պահպանել, ինչ անել ապրելու համար։ Լոկ մի հանգիստ անկիւն՝ աշխատանքի տակ լաւ և շատ քրտնելու համար. Լոկ մի տուն, ուր դու քո գլխի տէրն ես։

Այս էր որոնում հայը հազար ու հազար տարիներ։ Այս է նրա որոնածը և այսօր։

Բացառիկ է, այո, այս, եթէ կարելի է ասել, «բախտը» Զարմանալի։ Բայց այն կտոր երկնքի տակ, ուր հայի վիճակն է գամուած նրա պատմական հողին, այլ ևս զարմանալու ոչ մի բան չէ մնացել։

Գերութեան, արեան հեղեղների մեծ մեծ դարաշրջաններ ունեցաւ նա իր կեանքի մէջ և սովորեց հասկանալ որ ուրիշ կերպ չէր կարող լինել, որ Հայաստանի հողը ամենահին ժամանակներից կոխկռտում էին աշխարհի ամենադաժան բռնակալները։ Սալմանասարներ, Սարգոններ, Չինկիզ-խաններ, Լէնկթիմուրներ, Շահ-Աբասներ էին գալիս, արնախումներ, ազգեր ջնջողներ։ Ի՞նչ չը պիտի անէին նրանք։ Չը կոտորե՞լ։ Չայրե՞լ։ Չամայացնե՞լ։ Զարմանալի կը լինէր, անկարելի կը լինէր։

Եւ ժողովուրդը, խելամուտ այդ իրողութեան, խաւարի, ջնջման դարեր էր անցկացնում, յոյսը դնելով այն ակնկալութեան վրայ թէ կը գան ժամանակներ, բռնակալութեան փոխարէն ազատ մարդկութիւնը կը հաստատուի, որ և իրան էլ կը տայ հնարաւորութիւն ապրելու իր համար։

Բայց տեսէք այդ ազգի ճակատագիրը։ Լէնկթիմուրի, Սէլիմ Արնախումի անիծեալ բռնակալութեան տեղ Պարիզի սալայատակները մաշեցրած ժէօն-Թիւրքերը հաստատուեցին, ազատութեան պարեր պարեցին մոլեգնաբար, բայց դեռ այդ պարերի մէջ, դեռ չը յոգնած, Ադանա պարգևեցին հայերին, որ ուրիշ խօսքերով նշանակում է 25000 հայ հայրերի, հայ մայրերի, հայ երեխաների դիակներ։

Կարծում էինք թէ մոնղոլականութիւնը վերջնականապէս անյայտացել է Վոլտէրի և Ռուսսոյի շունչի տակ։ Կարծեցինք թէ միջին ասիական հինաւուրց գազանի ժանիքները թափել են նրա ճակատին խարանուած «Միութիւն և Առաջադիմութիւն» մարդկայնական խօսքերը։ Եւ ահա Հայաստանը բնաջինջ է դառնում և այսօր հայ ժողովրդի խղճուկ մնացորդները հալածւում են Միջագետքում։

Ազատութիւն էր եկել Թիւրքիայի վրայ։ Բայց ի՞նչ տուեց մեզ այդ ազատութիւնը։ Սոսկալի է մտաբերել անգամ։

Մեր խղճուկ պատմութիւնն աւանդում է թէ Ալփ-Ասլանը Անիի դռների առջև փոս փորել տուեց, այդ փոսի վրայ այնքան հայ մանուկներ մորթել տուեց, որ նրանց արիւնը փոսի մէջ լճացաւ, աւազան կազմեց։ Ու Ասլանը մտաւ նրա մէջ լողացաւ։ Քստմնելի է անշուշտ այս վայրենին։ Բայց նրա արնային լոգանքը մի բոլորովին անմեղ բան դարձրին, 1915 թուին, Պարիզի օսլացած շապիկներ հագած, եւրոպական համալսարաններ յաճախած ժէօն-Թիւրքերը։ Ինքն Ալփ Ասլանը Անիի դռների առջև, մարդկային արեան զզուելի տիղմի մէջ խոզի բաւականութեամբ թաղուած պահուն անգամ, կը սոսկար, եթէ տեսնէր XX դարին հասած իր զաւակներին։

Այսպէս, ուրեմն, ազատութիւնն էլ երաշխիք չէ եղել հայի համար։

Ազատութիւնն անգամ... Այս աստիճան տարօրինակ—բացառիկ, ուղղակի անմարդկային է հայի ճակատագիրը։

Եւ ահա այսօր՝ մի ուրիշ երևոյթ։ Յոյս ունէինք թէ ներկայ պատերազմի պատճառած մորմոքը վերջինը կը լինի մեր հայ ազգութեան սրտի մէջ, որ Թիւրքաց Հայաստանի հողը ազատուած կը լինի Օսմանեան տիրապետութիւնից, որ 500 տարուայ ընթացքում ցոյց է տուել թէ գիտէ միայն մորթել։ Մեծ ազատ երկիրները—Անգլիա, Ֆրանսիա, վերջերս նաև Ամերիկա պատերազմական նշանաբան դարձրին բոլոր ճնշուած մանր ազգերի ազատութիւնը։ Ազատուողների մէջ պիտի լինի, վերջապէս, և հայ ժողովուրդը—այսպէս էր պարզ ու բացարձակ յայտարարութիւնը։ Արիւնաշաղախ երկիրը այլ ևս չի մտնի Թիւրքական տիրապետութեան տակ։ Այս մի այնպիսի երանական վիճակ էր, որ մենք պատրաստ էինք նոյն իսկ քար սեղմել մեր սրտին և մոռացութեան տալ մեր անհաշիւ, անասելի և աննկարագրելի կորուստները։

*Ցարական Ռուսաստանն էր միայն, որ չէր կարողանում թաքցնել իր ախորժակը մեր երկրի վերաբերմամբ։ Բայց ահա նա էլ չքացաւ։ Բախտ բացուեց ոչ միայն Ռուսաստանի համար։ Յեղափոխական Ռուսաստանը, ի հարկէ, պիտի ամեն կողմով աջակցէր որ իրագործուի ազգերի ազատութիւնը։ Այդ բախտն էր և Թիւրքաց Հայաստանի համար։ Եւ մենք հրճուանքով տեսնում էինք որ վերացել է վերջին արգելառիթը Թիւրքաց Հայաստանի ազատութեան ճանապարհից։ Բայց ահա ազատ Ռուսաստանը հրապարակ նետեց «հաշտութիւն առանց կցումների և տուգանքների»։ Ու նորից սարսափ է պատում մեզ։ Միթէ, հարցնում ենք, ազատութիւնն այս անգամ էլ պիտի գայ փակելու մեր դըժոխքից դուրս տանող ճանապարհը։ Միթէ այս անգամ էլ ազատութիւնը պիտի ջնջէ մի մարտիրոս ժողովրդի հանգստութեան երաշխիքը։*

*Այսպէս է երևում հէնց առաջին հայեացքից։*

*Սկզբունքի դէմ չէ որ պիտի խօսենք։ Երբ մեզ ասում են թէ ազգերը չը պիտի զրկանքներ կրեն, թէ նրանց ստացուածքները չը պիտի յափշտակուեն, մենք ակամայ, յուսահատօրէն բացականչում ենք. «իսկ թիւրքը»։*

*Հայաստանը, որ այժմ գրաւուած է ռուսական զօրքերով, պիտի վերադարձուի նրա սեփական տիրոջը—Թիւրքիային։ Ահա ինչ կարող է ստեղծուել ռուսական մեծ յեղափոխութիւնից այն ժողովրդի համար, որ անթիւ դարեր սպասում է թէ մէրը իրան մի կտոր արև, մի օդաւէտ անկիւն կը տան, որպէս զի նա կարողանայ իր դարաւոր վէրքերը բժշկել։*

*Հիմա էլ չասել թէ այդ ժողովրդի ճակատագիրը իսկապէս բացառիկ է...*

*Անգլիայում դեռ երկու տարի առաջ հաշւում էին թէ ներկայ պատերազմի մի տարում Թիւրքերը ոչնչացրել են մօտ մի միլիոն հայ։ Եւ այսքան զոհերից յետոյ է որ մեր մնացած մի քանի փշրանքները նորից պէտք է վերցնել և տալ մեր դահիճներին...*

*Մարդկային խիղճը վրդովուած ծառանում է այսպիսի մի հնարաւորութեան դէմ։ Միթէ, մտածում ես, Հայաստանի դաշտը պիտի սովորէ Աբդուլ-Համիդների, Մէհէմմէդների, Էնվէրների և Թալէաթների անունների հետ անիծել և մեծ ու կարմիր ազատութիւնը...*

*Սոսկալի կը լինի։ Աշխարհն իր հիմնարկութեան օրից տեսած չի լինի այսպիսի մի դժբախտութիւն։ Լայնասիրտ ազատութիւնը եղբայրացած բռնական հաւատամքի հետ։ Մարդկութիւնը իր յուշագրերի մէջ որոնումներ կանէ և կը տեսնէ որ երբէք սեփականութեան իրաւունքը այսքան զարհուրելի կերպով չէ պաշտպանուել։ Օսմանցին զէնքի իրաւունքով սեփականատէր է դարձել և դարերի ընթացքում արիւն և լեղի էր խմեցնում իր սեփականացրած զոհերին։ Բազմաթիւ ազգեր ազատուեցին կարմիր սուլթանների լուծից և այդ ազատութիւնը մարդկութեան համար նուիրական դարձաւ, օրհնուեց միլիոնների բերանով։ Այսօր հայի վրայ է որ արիւնոտ սեփականութեան իրաւունք պիտի պաշտպանուի։ Եւ պաշտպանողն ո՞վ է։—Մարքսը։*

*Անհաւատալի է։ Բոլորովին անհաւատալի։*

*Կայ, սակայն, մի առարկութիւն այս ողբալի եզրակացութեան դէմ։ «Առանց կցման և տուգանքի» նշանաբանին ռուս յեղափոխական ռամկավարութիւնը միշտ աւելացնում է՝ «ազգերի ինքնորոշման իրաւունքով», այսինքն թէ իւրաքանչիւր ազգ ինքը պիտի որոշէ թէ ինչ է ուզում լինել ինքը և ինչպէս է ուզում։*

*Այս մի վեհ ու արդար սկզբունք է, որ, տարաբախտաբար, մինչև այսօր մնացել է լոկ թէորիա, թղթի վրայ միայն գոյութիւն ունեցող մի իդէալական բաղձանք։ Կիրականանա՞յ նա այժմ, այս համաշխարհային պատերազմի հետևա՞նքով։ Եթէ իրականանայ, համաշխարհային պատմութիւնը պիտի արմատապէս կերպարանափոխուի։ Մեծ պետութիւնները պիտի փոքրանան։ Յարութիւն պիտի առնեն հարիւրաւոր նոր ազգութիւններ։ Եւ այս համամարդկային խնջոյքի մէջ հայերն էլ, ի հարկէ, իրանց պատառիկը կը ստանան։*

*Բայց չօգևորուենք այսպիսի ուտոպիայով, որ գուցէ դեռ շատ հեռաւոր է իբրև ապագայ։ Այսօր բոլոր ազգութիւնների հարցը չէ դրուած, այլ միայն մի քանիսներինը, որոնք ջարդուել են ներկայ պատերազմից—Բելգիա, Սերբիա, Չերնոգորիա, Ռումինիա։ Հայաստանի անունը ռուսական ռամկավարութիւնը բացարձակապէս չէ դրել և չէ դնում իր յայտարարութիւնների ու բացատրութիւնների մէջ։ Այսպէս է և գերմանական սոցիալիստների վերջին յայտարարութիւնը։*

*Ահա ինչ սոսկալի վտանգ կայ կախուած մեր գոյութեան վրայ։ Կարելի է, շատ ու շատ կարելի է որ մեզ կը մոռանան. կարող են մեզ մեր արիւնոտ սեփականատիրոջը վերադարձնել...*

*Եւ ահա հէնց այսպիսի մի ժամանակ, երբ գուցէ ընդմիշտ որոշւում է մեր լինել չըլինելը, երբ մեր գազան թշնամին մեծամեծ յոյսեր է ունենում թէ իրան չի դպչի ազատութիւնը, թէ այդ ազատութեան ձեռքով նորից կը տիրանայ հայութեան վերջին փշրանքներին,—այսպիսի մի ճգնաժամին է որ մենք բաժանուել ենք «արևմտահայ» և «արևելահայ» հակոտնեաների և կըրծում ենք իրար մի եռանդով, որ արժանի էր մի աւելի լաւ գործադրութեան։*

ԼԷՕ

## Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ՏԱՐԵԿԱՆ ԸՆԴՀ.ԺՈՂՈՎԸ*)

*Ընկերութեան Խորհրդի Նախագահ պ. Ս. Յարութիւնեանը տուեց Ընկերութեան կից գործող Հ. Կ. Կոմիտէի գործունէութեան հաշուետուութիւնը։*

*Հ. Կ. Կոմիտէն հրատարակել է արդէն մի մանրամասն տեղեկագիր սկսեալ 1915 թ. օգոստոսից մինչև 1917 թ. յունուար 1-ը, որ պարունակում է իւր մէջ Կոմիտէի և Պարենաւորման Բաժանմունքի գործունէութեան, դպրոցների, որբանոցների, արհեստանոցների և փախստականների վիճակագրութեան հաշուետուութիւնը։*

*Փախստականների ընդհանուր թիւը, համաձայն 14 յունուարի 1916 թ. վիճակագրութեան, ցոյց է տալիս հետևեալը՝ 267000 հոգի ցուցակագրուած, իսկ ցուցակի մէջ չընկածների հետ միասին 300,000 հոգի։*

*Փախստականներից 39,562 հոգի երկրագործ են, 2,927-ը վաճառական, 2,601-ը արհեստաւոր, 287-ը մտաւորական։ 1914 թուից յետոյ իրարի յաջորդող չորս նահանջի ընթացքում փախստականներից վնասուած են մօտ 70,000 անձ։*

*Հ. Կ. Կոմիտէն իւր հովանաւորութեան ներքոյ այժմ ունի 147 դպրոց՝ 230 բաժանմունքներով, 11,130 աշակերտ և 255 ուսուցիչ։ Որբանոցների թիւը հասնում է 52-ի՝ 4,363 երեխայով։*

*Կոմիտէն բացել է արհեստանոցներ, ընդհամենը՝ 15 արհեստանոց։ Մի քանի տեղերում երկրագործութեան համար հողեր կան վարձուած։*

*Պարենաւորման բաժանմունքը մինչև 1-ն յունուարի 1917 թ.*

*) Տե՛ս «Համբաւաբեր» № 21

ունէր 1,400,000 ռ., որից 200,000-ը գործադրուած է բեռնատարքի (տրանսպորտ), նրանց պահպանութեան, կանոնաւորման և զանազան իրերի համար։ 1917 թուից յետոյ դրամագլուխը բարձրացաւ 2,000,000 ռ. գումարի։

Տեղեկագրին կից հրատարակուած է գաղթականների տեղաւորուած վայրերի և Կոմիտէի գործունէութեան շրջանների քարտէսները։

Կառավարութեան տրամադրած 15 ռ. իւրաքանչիւր որբի ամսական ծախսերի համար չի բաւականանում, այդ գումարը խիստ քիչ է, այդ պատճառով Կոմիտէն ստիպուած է եղել զանազան նուիրատուութիւններից և աղբիւրներից հոգալ ծախսերը. իսկ եթէ եղել են պակասաւոր կողմեր որբանոցներում, պարենաւորման գործերում և այլն, այդ բոլորը առաջ է եկել նպաստի խիստ նուազ լինելուց։

Ներկայ կառավարութիւնը փախստականական գործերի ընդհ. ղեկավարութիւնը յանձնել է 23 անդամից բաղկացած մի մարմնի, որն արդէն չորս ազգութիւնների մէկական ներկայացուցիչներից (հայերի կողմից Ս. Յարութիւնեան) մի Գործադիր Կոմիտէ է կազմել, որը պիտի ղեկավարի Կովկասեան ճակատի գաղթականութեան բոլոր գործերը։

Ապա զեկուցանող պ. Ս. Յարութիւնեանը առաջարկեց ընդհանուր ժողովին ամառուայ ամիսների ընթացքում գումարել Կ. Հ. Բ. Ընկերութեան բոլոր ճիւղերի ներկայացուցիչների համագումարը։

Համագումարը մեծ արդիւնք և նշանակութիւն կարող է ունենալ Ընկերութեան կանոնադրութեան վերակազմութեան գործունէութեան ընթացքի վրայ։ Ռուսաստանի ներկայ յեղափոխութիւնը ժողովրդական բոլոր հիմնարկութիւնների առաջ՝ նորանոր ճանապարհներ և ազատ հորիզոններ բացաւ։ Այդ ազատութիւնից օգտուելու համար հասարակական հաստատութիւնները շտապում են ընդլայնելու և նոր կարգերին համապատասխան դարձնելու իրենց գործունէութիւնը։

Կ. Հ. Բ. Ընկերութեան համար էլ այդ տեսակէտից համագումարն անհրաժեշտ է։

Ներկայ պայմաններում հայ գիւղացութիւնն և գաւառը ունեն իրենց կարիքներն ու պահանջները, որոնց բաւարարումն անհրաժեշտ ու կարևոր է. այդ պահանջներին ու կարիքներին ծանօթանալուն մեծապէս պիտի նպաստի համագումարը։

Ընդհ. ժողովը միաձայնութեամբ համաձայնուեց համագումարը գումարելու ձեռնարկին, որի կազմակերպման լիազօրութիւնը յանձնեց Խորհրդին, իբրև ծախք տրամադրելով 2,500—3,000 ռ.։

Ապա ժողովը զբաղուեց հերթով դուրս գնացող Խորհրդի անդամների՝ պ. Ս. Յարութիւնեանի, իշխ. Մ. Թումանեանի, տիկ. Հ. Առստամեանի, Յ. Շահնազարեանի և կամաւոր կերպով հեռացող Գ. Տէր-Պետրոսեանի ընտրութեամբ։

Միաձայնութեամբ վերոյիշեալ չորս անդամները վերընտրուեցին, իսկ Գ. Տէր-Պետրոսեանի փոխարէն Խորհրդի անդամ ընտրուեց Յ. Մալխասեանը, իսկ Շիրինեանը համարուեց կանդիդատ։

Վերստուգիչ յանձնաժողովի անդամները մնացին նոյն անձինք։

Այնուհետև ընդհանուր ժողովի նախագահը նիստը յայտարարեց փակուած։

---

## ՀԱՅԱՆՊԱՍՏ ՇԱՐԺՈՒՄ ԱՆԳԼԻԱՅՈՒՄ

Մեծն Բրիտանիոյ Մանչեստր քաղաքում ուժեղ ծաւալ է ստացել հայանպաստ շարժումը։ Շնորհիւ հայազգի գործիչ պ. Ա. Մանաշեանի այնտեղ կազմուած է մի կենտրոնական մարմին՝ բաղկացած բրիտանացի անուանի գործիչներից, որոնք մեծ խանդավառութեամբ դրամ են հանգանակում հայ որբերի օգտին։ Կոմիտէի անդամներն են՝ Մանչէստըրի քաղաքագլուխը (նախագահ), Վիկոնտ Բրայս (պատ. նախագահ). Սալֆորդի քաղաքագլուխ (փոխ-նախագահ), Ֆորբըս Ադամ, Ժ. Ռ. Բառլօու, Ժ. Ա. Բրայտ, Թէօդոր Կրիւսոն, գնդապետ Գրիգորի, Ջօն Նօյ, Վիլիամ Մաթեր, Նիտհամ, Թովմաս Թորնհիլլ Ջաօնն, եպիսկ. Վիլսոն, Մարգարիտ Աշտոն, Չարլս Բիհրենս, Էդուարտ Դոններ, Բրոդհուրստ, Հարվէյ, Էդուարտ Հոլտ, Հէնրի Միրս, Ջոն Ռանդլը, Ֆրիդրիկ Լ. Սմիթ, Վիլլիամ Ստեֆենս, քարտուղար՝ Դանիէլ Մակ Կէյր, օգն. քարտ.՝ Ջորջ Արմսդրոնգ, գանձապահ՝ Ջոն Մուդի, պատ. քարտ. Ա. Մանաշեան։

Հայանպաստ այդ շարժման մեծապէս նպաստում է նաև «Manchester Guardian» թերթը, որի խմբագիրը լաւագոյն զգացումներով տոգորուած է դէպի հայ բազմաչարչար ժողովուրդը։ Հայ որբերի խղճալի վիճակի և մեր ժողովրդի ապագայ բարեկեցութեան մասին յաճախ յօդուածներ տպւում են այնտեղ, որոնք ամենաանկեղծ ոգիով կոչ են անում բրիտանացիներին՝ օգնութեան փութալ։

Այդ յօդուածներն երբեմն մեծ ազդեցութիւն են գործում և նպաստում կոմիտէի գործունէութեան։ Ինչ խօսք որ Անգլիայում մամուլի կարծիքը խոշոր և վճռական նշանակութիւն ունի և գրեթէ թերթերն են կառավարում երկրի հասարակական կարծիքը։

Դժբաղդաբար Մանչէստըրի հայութեան հարուստ դասակարգը ընդհանրապէս անհետաքրքիր վերաբերմունք ունի դէպի հայկական կեանքը. այդ պախարակելի անտարբերութեան մէջ ողջունելի ու ծափահարելի են պ. Մանաշեանի թափած ջանքերը։

---

## Գեղարուեստ

Ն. ԹՈՐԳՈՄԵԱՆԻՆ

* * *

Գնում եմ վե՛ր, երկնի ուղին,
Խոնարհ օրհնում ինձ տանջողին...

Որպէս առուն հեզ ճաճանչում
Ոսկեմրմունջ երգս եմ հնչում...

Հոգիս նուրբ է ծաղկի նման,
Որպէս անուշ ցօղը աշնան...

Ես դարձել եմ սի՛ւք, երազա՛նք,
Համակ թախի՛ծ, համակ քնքշա՛նք...

Եւ գնում եմ երկնի ուղին,
Երգո՛ւմ, օրհնում ինձ տանջողին։

Թիֆլիս

ԱՆՈՒՐՋ

## BRITISH ARMENIA ԿՈՄԻՏԷՆ
## ԵՒ ՌՈՒՍԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ

Ռուսական յեղափոխութիւնը, գուցէ մեծագոյնը տիեզերքի պատմութեան մէջ և գուցէ կարևորագոյնը մարդկային ցեղի ճակատագրի և ազգերի ազատութեան տեսակէտից, հօս ազատական շրջանների մէջ յարուցել է մեծ խանդավառութիւն և լուսեղէն յոյսեր։ Ազատ Ռուսաստանի առժամեայ կառավարութեան հռչակած քաղաքացիական ազատութիւնների հրովարտակը, Ֆիններին, Լեհերին և Հրէաներին խոստացուած ազատութիւնները՝ ազգութիւնների յարութեան պատմութեան մէջ կը բանան մի նոր զարգլուխ։ Դէթ Անգլիայում ցարդ երևացել է միմիայն մի յայտարարութիւն արդարադատութեան նախարար պ. Կերենսկիի կողմից՝ Տաճկահայաստանի վերաբերմամբ։ Մի տեսակցութիւն տալով *Տէյլի Քրօնիքլ*-ի Պետրոգրադի թղթակցին, նախարարը նախ փաստաբանում է Պոլսի և նեղուցների միջազգայնացումը և Տաճկահայաստանի ինքնավարութիւնը՝ Ռուսաստանի թևարկութեան տակ։ Եւ սոցիալիստ նախարարը, թւում է, ինքնավարութիւն առաջարկում է Տաճկահայաստանին ոչ թէ էութեամբ իբրև մի բարիք կամ այդ երկրի իրաւունք, «այլ Կովկասում մեղմացնելու ցեղային պայքարը և կովկասահայերի ուշադրութիւնը այլուր դարձնելու նպատակով»։ Գուցէ առժամեայ կառավարութիւնը հաւաքական պատասխանատուութեամբ յայտարարէ նաև ազատ Ռուսաստանի վերաբերմունքը և դիտաւորութիւնները դէպի նահատակուած Տաճկահայաստանը՝ նպատակների և շարժառիթների այն վեհոգութեամբ, որով համեմատաբար աւելի ներշնչուած էին Ֆինլանդիային և Լեհաստանին ուղղուած յայտարարութիւնները։

Մեր Անգլիացի բարեկամները ոգևորուած են այն հեռանկարով, որով ազատ Ռուսաստանը անհրաժեշտապէս պիտի լուծէ Տաճկահայաստանի հարցը արդար և խղճամիտ անվերապահութեամբ։

Այսօր համայնքների պալատում *Բրիթիշ Արմէնիա* կոմիտէն գումարեց մի նիստ նկատի առնելու ստեղծուած նոր դրութիւնը։ Այս կոմիտէն կազմուած 1913-ին, կը բաղկանայ Հայաստանի բարեկամ յայտնի Անգլիացի քաղաքագէտներէ, պատգամաւորներէ, պրոֆէսորներէ, գրողներէ և հոգևորականներէ։ Նրա գործը ունի զուտ քաղաքական բնաւորութիւն։ Եւ ոչ մի յարաբերութիւն չունի նպաստի հարցին հետ։ Նախագահութեամբ պ. Անիւըրին Ուիլիըմսի, ժողովը նկատի առաւ Հայաստանի և Հայերի կենսական շահերի հետ առնչութիւն ունեցող մի շարք հարցեր։ Նիստին ներկայ էր լորդ Բրայս, զանազան պարլամենթականներ և մի քանի հայ անդամներ։

Անգլիական բանակի կողմից Բաղդադի գրաւման լուրը ստացուելուն պէս, դիմեցի մեր ականաւոր բարեկամներին միջոցներ ձեռք առնել Միջագետքի զանազան մասերում տարագրուած մեր դժբախտ հայրենակիցների փրկութեան և պաշտպանութեան համար։ Պ. Ուիլիըմս ժողովին յայտնեց այդ նպատակով ձեռք առնուած բոլոր հնարաւոր միջոցները և առնուելիք քայլերը…

Ռուսական յեղափոխութեան հայկական հարցի լուծման վրայ ունենալիք հաւանականութիւնները առարկայ եղան բազմակողմանի քննութեան։ Որոշուեց հետևեալ հեռագիրը (նախագահ Ուիլիըմսի ստորագրութեամբ) ուղարկել ամենայն հայոց վեհ. կաթողիկոսին, պ. Միլիւկովին, պ. Պապաջանեանին, ռուսահայ և ռուս մամուլին։

«Բրիտանա-Հայկական Կոմիտէն սրտագին շնորհաւորում է ձեզ վասն ազատ Ռուսաստանի առժամեայ կառավարութեան քաղաքական յայտարարութեան ի նպաստ բոլոր ազգերի համահաւասար իրաւունքներին, ազգութեան և հայկական ինքնավարութեան սկզբունքներին, և ուժեղապէս թախանձում է կեդրոնացնել բոլոր ջանքերը, պատերազմի յաջող վերջաւորման վրայ, որ կը նշանակէ յաղթանակը ազատութեան և ազգութեան սկզբունքներին։ Ազատութեան բրիտանացի սիրողները ջերմապէս ողջունում են Ռուսաստանը ի շարս ազատ ազգերի ընկերակցութեան»։

Հօս անհնար է չյիշել մի հանգամանք որ նկատի առնուեցաւ ժողովում։ Պետրոգրադի անգլիական թղթակիցները մի քանի առիթներով յիշել են ռուսական յեղափոխութեան հանդէպ հայերի «բուռն խանդավառութիւնը և ոգևորութիւնը», իսկ կովկասեան միւս տարրերի չափաւոր և զգուշաւոր ընթացքը։ *Տէյլի Թէլէկրաֆ*-ի թղթակիցը հաղորդում է որ «հայ սոցիալիստ կուսակցութիւնը անցկացրել է մի որոշում Ռուսաստանում յառաջացնելու սոցիալիստական հասարակապետութիւն»։

Առանց մի բոպէ ստանձնելու խորհրդատուի դեր, այդ սոցիալիստներին պէտք է յիշեցնել որ չափազանց խանդավառութիւնը միշտ յանգում է տխուր ռէակցիայի և թոյլ չէ տալիս լուրջ դատողութեան և կեդրոնացած ճիգ. հոգեկան մի այդպիսի դրութիւն կարող է յառաջացնել մի հակահարուած, որ, դժբաղդաբար, ինչպէս ցոյց է տուել մօտիկ անցեալի պատմութիւնը, միշտ անդրադառնում է հայ անմեղ զանգուածների վրայ։

Հայ ղեկավար շրջանները լաւ կանէին նկատի ունենալ այդ հանգամանքը և նոյնիսկ ներկայ ոգևորիչ բոպէին պահել հոգեկան ու մտաւորական հաւասարակշռութիւնը։ Մի վարկեան պէտք է մտաբերել Ադանան ու կամաւորական շարժումը, և գործելակերպը ուղղել այդ փորձառութեան հիմունքների վրայ։

Լորդ Բրայս խօսեց նաև Ամերիկայի Միացեալ Պետութիւնների Եւրոպական պատերազմին մասնակցելուց առաջանալիք հետևանքների մասին։ Ո՛չ ոք աւելի իրաւասու է խօսելու Ամերիկեան իդէալների և քաղաքական դրդապատճառների մասին քան «The American Commouvealth» դասական երկասիրութեան այս մեծահամբաւ հեղինակը և Վաշինգթոնի նախկին դեսպանը։ Նա հաւատաց որ Ամերիկայի մասնակցութիւնը ներկայ պատերազմին և նրա դերը հաշտութեան ապագայ վեհաժողովում Հայաստանի իրաւունքների վերաբերմամբ կունենայ վճռական ազդեցութիւն։

«Ոչ մի ազգ աւելի անկեղծ և անշահախնդիր բարեկամութիւն ցոյց չէ տուել հայերին, ասաց Լորդ Բրայս, քան Ամերիկեան մեծ հասարակապետութիւնը և Ամերիկայի ժողովուրդը»։

Լոնդոն, ապրիլ 3

Արշակ Սաֆրաստեան

## ՊԱՐՍԿԱՍՏԱՆ

*Թաւրիզ, 28 ապրիլի*

*Ռուսական մեծ յեղաշրջումը իր անմիջական ազդեցութեան նշաններն է ցոյց տալիս Շահնշահերի երկրում։ Պարսիկ փոքրաթիւ մտաւորական երիտասարդութիւնը մասնակից է իր մեծ դըրացու հրճուանքին և հաւատում է, որ շնորհիւ ռուսական նոր և ազատ կարգերի՝ Պարսկաստանին հնարաւորութիւն կը տրուի անկաշկանդ առաջդիմելու։ Վերոյիշեալ կարծիքին միանում են նաև վաճառականութեան մի մասը, որի համար ներկայ համաշխարհային պատերազմը ամենայարմար միջոցն է եղել իր գըրպանը պարարտացնելու։ Այդ դասակարգը նմանւում է անողնաշար կենդանիների, որոնց համար խիստ հեշտ է երբեմն կծկուել, ոլորուել, մերթ դառնալ այս կողմ և մերթ էլ այն կողմ, ի հարկէ նկատի ունենալով իր սեփական շահը…*

*Թաւրիզը՝ Ատրպատականի հայութեան մշակոյթի կենտրոնը, սկսում է կամաց կամաց կերպարանափոխուել։ Ռուսական հին, այլամերժ ռեժիմը կարողացել էր իր երկաթէ ճիրաններում խեղդել նոյն իսկ իր հարեւան երկրում գտնուող հայոց ամեն մի ազատարար և օգտաւէտ շարժումը։ Այժմ, երբ արդէն չկան այլևս այդ ճիրանները և խորտակուած է բռնակալութեան արնածուծ ամրոցը, պարսկահայ ժողովուրդ ևս, բնականաբար, իր սրտագին աջակցութեամբ պիտի միանար բոլոր այն փոքր ազգութիւններին և ազգային հաստատութիւններին, որոնք տարիներով կամ դարերով զգացել են կոպիտ և այլասերող մտրակի հարուածների ցաւը։ Հայ քաղաքական կուսակցութիւնները, ինչպէս և հասարակական կազմակերպութիւնները իրանց ստորերկրեայ, մութ նըկուղներից դուրս գալով, սկսում են ազատօրէն գործել, իւրաքանչիւրը իր ուժը ներած չափով։*

*Կուսակցութիւնների և ռուս զինուորների կողմից լինում են միտինգներ և բանախօսութիւններ, զարգացնելու համար անգիտակ զինուորներին և ժողովրդին։ Ապրիլի 18-ին, այսինքն մայիսի 1-ի տօնի առթիւ քաղաքումս ևս տեղի ունեցաւ մի մեծ և հանդիսաւոր ցոյց ռուս զինուորների և հայ քաղաքական ու հասարակական կազմակերպութիւնների կողմից. եղան բանախօսութիւններ օրուայ նշանակութեան մասին։*

*Թաւրիզի կուլտուրական կեանքն ևս զգալի կերպով եռուն է։ Տեղիս Կուլտուրական Միութիւնը համարեա ամեն շաբաթ կազմակերպում է դասախօսութիւններ հայկական ակումբի դահլիճում։ Արմենեանի դերասանական խումբը, որ մէկ և կէս ամիս այստեղ ներկայացումներ էր տալիս, արդէն վերադառնում է Կովկաս։*

*Տեղս, Ներսէս եպիսկոպոս Մելիք-Թանգեանի պատուաւոր նախագահութեան տակ կազմուած է «Միջագետքի հայերին օգնող եղբայրական օգնութեան կոմիտէ», որի նպատակն է ամեն կերպ օգնութիւն հասցնել Միջագետքի անապատներում հիւծուող և սովամահ մեր հարազատներին։ Այս կոմիտէի շուրջը հաւաքուած են առանց բացառութեան անաչառ, եռանդուն և հասարակութեան վստահութիւնը վայելող անձնաւորութիւններ։ Կոմիտէն պատրաստում է մի արշաւախումբ, որը պէտք է մեկնի մօտիկ ապագայում դէպի Միջագետք. սրան միանում են նաև Սալմաստում գտնուող Քաղաքների Միութեան բժշկա-սանիտարական խմբակը և Հայաստանի վերաշինութեան յանձնաժողովի կողմից մի ներկայացուցիչ, որոնք միասին պիտի գործեն։*

*Անշուշտ գործը խիստ այժմէական է և ամենակարեւոր, որի համար հարկաւոր է բարոյական, առաւել ևս նիւթական լայն աջակցութիւն, ամեն մի անհատի, նամանաւանդ գաղթ. գործով զբաղուող կազմակերպութիւնների և ընկերութիւնների կողմից։*

*Ազատ-Վշտունի*

## ՏԱՃԿԱՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԻՍԱՐԻԱՏ

*Ժամանակաւոր Կառավարութիւնը որոշել է Թիւրքիայից գրաւուած հայկական նահանգները չկցել Անդրկովկասին, այլ առանձին կոմիսարներ նշանակել նրանց համար, որոնք անմիջապէս ենթարկւում են Պետրոգրադի իշխանութեան։ Ընդհ. կոմիսարը նշանակուել է Գեն. Աւերեանովը, իսկ օգնականները նշանակուած են բժ. Զաւրիեանը և Իվանիցկի։*

# Մատենախօսութիւն

## ՔՈՒՉԱԿ ՆԱՀԱՊԵՏԻ ՄԱՍԻՆ

*«Համբաւաբեր»-ի № 13-ի մէջ Ս. Մովսիսեան ստորագրութեամբ Նահապետ Քուչակի մասին գրուածքը կարդացի։ Ս. Մովսիսեանը կարծես իբրև նորութիւն կը յայտնէ թէ՝ «Քիւչակ թիւրքական քիւչիւկ բառն է». այս նախադասութիւնը գրեթէ նոյնութեամբ կը գտնենք Յովհ. Թադէոսեանի «Քուչակ Նահապետի երգեր» գրքոյկի 7-րդ էջին մէջ, այսպէս, «Քուչակ տաճկերէն քիւչիւք բառն է»։*

*Թադէոսեանի այս կարծիքը ի հարկէ ենթադրական է, նոյնը կրնանք ըսել նաև Ս. Մովսիսեանի համար, որ առանց փաստերու, համոզկեկ տուեալներու ընդունուած «Քուչակ» անուանահնչումը «Քիւչակ»-ի կը փոխէ, նոր բարդութիւն մըն ալ ստեղծելով այդ անուան շուրջ։ Ժողովուրդը այդ անունը—«Քիւչակ—բնաւ չի հնչեր, նոյնպէս անծանօթ է անոր «Քուչակ» հնչումը, այլ նա «Ջիչակ» անունը կը հնչէ, որը կը յիշուի Խառակոնիսի մէջ երգուած և Քուչակին վերագրուած թիւրքերէն իւրաքանչիւր երգի վերջին տանը մէջ «Վանլի Ջիչակ» կամ «Աշըղ Ջիչակ» կոչումով, որ «ծաղիկ» կը նշանակէ, ծաղկեալ, յառաջադէմ, փայլուն իմաստով։*

*Մեր բանասէրներէն Ա. Չօպանեան, Կ. Կոստանեան, Արիստակէս վրդ. Դէվեանց, Խաչ. Լևոնեան և Յովհ. Թադէոսեան շատ կարծիքներ յայտնեցին «Քուչակ» անուան ստուգութեան մասին. բայց ոչ մէկը չի կրցաւ վերջնական եզրակացութեան մը յանգիլ, իսկ Ս. Մովսիսեանը կարծես մէկ նախադասութեամբ (այն ալ ոչ իր սեփական) կուգայ ստուգաբանելու այդ անունը «Քիւչակ թիւրքական քիւչիւկ բառն է» և կը կարծէ որ այսպիսով այդ*

անուան ստուգաբանութեան վերջ տուած եղաւ, առանց գիտնալու որ Բուչակ անունը հնչումներու տարբերակներ ալ ունի, այսպէս՝ Բուչակ (ընդունուած և տարածուած) Բոչակ (Էջմիածնի № 1640 ձեռագրի մէջ «ես Նուաստ Բոչակ որ ասեն ի Վան») Չինակ (Մանուէլ Միրախորեանի «Նկարագրական ուղեւորութիւնք» եռահատոր գրքին մէջ կը յիշուի «Աշըղ Չինակ մականուանեալ բանաստեղծ հայն» II հատոր, էջ 130)։

Ասկ Բուչակ անունը ոչ մի տեղ (գրաւոր յիշատակարաններու և կամ ժողովուրդի մէջ) Բիւչակ չի կոչուիր։ Ասոր իբր ապացոյց յիշենք հետեւեալները։ Խառակոնիսի եկեղեցւոյն մօտիկ պապ ու թոռ Բուչակներու ցոյց տրուած գերեզմաններու վրայ կան տապանագրեր (որոնց մանրամասնութիւնը ունիմ ձեռքիս տակ), ասոնց վրայ կը յիշատակուի «Բուչակ» անունը երկու անգամ։ Խառակոնիսի ս. Թէոդորոս եկեղեցու հին ձեռագիր Աւետարանի յիշատակարանին մէջ կը յիշատակուի Բուչակ անունը այսպէս. «Բուչակ անուն բարեմտական» և այլն։ Իսկ երգի մը մէջ Թոռ-Բուչակին վերագրուած. կը կարդանք սա տողերը.

«Ես Բուչակս Վանեցի»
«Ի գիւղէն Խառակոնիսայ» և այլն։

Առիթէն օգտուելով կուզէի յայտնել որ մենք 1914 թուէն սկսեալ Բուչակի մասին հաւաքած ունինք բազմաթիւ թուրքերէն երգեր (մօտ 150 տուն), այլև աւանդավէպեր, զրոյցներ (թւով 15), որոնց մէջ կը մտնեն նաև Ս. Մովսիսեանի յիշածները (թէև իմս վարիանտներ ալ ունի), Թոռ-Բուչակին վերագրուած հայերէն երգեր, և այլն, որոնք մենք գրի առած ենք Վասպուրականի զանազան կողմերը, ինչպէս նաև Խառակոնիսի մէջ, նոյն գիւղացի ուստայ Ղազարի և Գէորգ Կարապետեան երգիչ ծերունիներէն։ Իսկ վեց տուն ալ շատ ընտիր սիրային հայերէն քառեակներ (բոլորովին նոր և անտիպ) Բուչակաձև տաղաչափութեամբ և անոր զգացումներով սիրերգուած, գրի առած ենք 1914-ի ապրիլին Արճէշի մէջ, կոյր աշուղէ մը, որ այդ երգերը 30 տարի առաջ սորված է եղեր վանեցի աշուղ Պատուրէն, որ յայտներ էր թէ այդ քառեակները «Խառակոնիսցի աշուղ Չիչակը» երգած է։ Մեր այս հաւաքած նիւթերուն միացուցած ենք նաև ամփոփ ուսումնասիրութիւն մը, օգտուելով մինչև այժմ Բուչակի մասին հրատարակուած բոլոր գրքերէն, յօդուածներէն և ժողովրդական զրոյցներէն։ Այդ ուսումնասիրութեանը մէջ մենք ցոյց պիտի տանք թէ Նահապետ Բուչակը ինչքան տեղ գրաւած է Վասպուրականի և Ակնի հայ բանահիւսութեանը մէջ և կամ իր երգերը ինչ աստիճանի կապ ու նմանութիւն ունին այս երկիրներու ժողովրդական երգերու հետ։ Այս ուղղութեամբ մենք արդէն կաշխատենք և կը պատրաստուենք մեկնիլ Վան Բուչակի մասին ամեն ինչ տեղն ու տեղը ուսումնասիրելու համար՝ Խառակոնիսի՝ Բուչակի կարծուած հայրենիքի մէջ։

Էջմիածին

Հայկ Աճէմեան

# ԳԱՒԱՌ

*Ելենովկա*

Սևանայ լճին կից Ելենովկան զուտ ռուս-մալականաբնակ մի գիւղ է, համարեա թէ Ծաղկունք գիւղէն 10 վերստ հեռաւորութիւն ունի։ Թուականէս 18—20 տարի առաջ մալականները քրդական բէգերի նման ձեռք կը ձգեն սոյն գիւղի վարելահողերը և կը գրաւեն. գիւղացութիւնը 3 անձէ մի մարմին կը նըշանակէ որպէս զի բողոքէ այդ մասին պատկանեալ իշխանութեան, իսկ մալականները գեներալ Մարկովի ժամանակ, 1500 ռ. կաշառք տալով, խեղճ հողագործ ժողովուրդը կը զրկեն 266 դեսեատին հողից։ Դիմումները կը մնան ձայն բարբառոյ յանապատի։ Նոյն օրից սկսեալ, հողազրկուած գիւղացին կը մատնուի թշուառութեան և խեղճութեան, իսկ այժմ յոյսը դրած է մայիս 26-ի Երևանի համագումարին՝ ուղարկելով պատգամաւորներ։ Տեսնենք արդիւնքը ինչ կը լինի։

Ծաղկունք — Մ. ԲԱՐՍԵՂԵԱՆ

*Գետաշէն, 26 մայիսի*

Ամսոյս 24 ին տեղս սարսափելի կարկուտ տեղաց և միաժամանակ հեղեղը յորդացած վազել սկսեց։ Տարաբաղդ գիւղացութիւնը, որու տնտեսական անասելի քայքայումը համաշխարհային պատերազմի առթիւ զինք տարեր փաթաթեր է սովի անձուկ օղակների մէջ՝ իսպառ յուսահատուեցաւ։ Կարկուտը քանդեց, քայքայեց իր բերքի մեծ մասը, որը այնքան դժուարութեամբ էր աշխատած ու արդիւնաւորած։

Ապրանքատէրերը ևս առաւել իրենց արհեստական թանգութեամբ կաշխատեն աւելի հարստահարել անյոյս գիւղացութեանը։

Ալիւրին պուդը այսօր տեղս 7—8 ռ. կը գնուի, շաքար չի ճարուիր երբէք, բրինձ փունտը՝ 40—45 կ. է, իւղինը՝ 2 ռ. 50 կ. է, միսինը՝ 80-90 կ. է։

Աւազակային կողոպուտն ու ոճրագործութիւնները շրջանիս մէջ հասարակ գործեր են դարձեր. գիւղացութիւնը չունի ինքնապաշտպանութեան միջոցներ։

Շրջանիս գաղթականութիւնը տիրող անտանելի պայմաններու մէջ աւելի խեղճացած ու ճնշուած է, աջակցող չունի. ստիպուած է դիմել մուրացկանութեան, որը նոյնքան ցաւալի է և անօգուտ։

Գաղթ. դպր. ուսուցիչ՝ Վահան Մկրտչեան

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է.—

—պ. Կարապետ Շիրինեանից «Շիրինեան» գրադարանի օգտին 150 ռ.։

—պ. Համբարձում Մանուսաճեանից յօգուտ որբերի 2 ռ.։

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

1) Շնորհակալութեամբ ստացանք յօգուտ Հայկ. կենտր. կոմիտէի 5000 ռ. Մանչեստրից պ. Մանուշակեանի միջոցով։

2) Տրապիզոնից հայր Մելեանցը հեռագրում է, որ Օրգովից այնտեղ են հասել 11 նոր փախստականներ, նրանցից մէկը օրիորդ է Հրանուշ Խանդժեան անունով։

3) Փախստականների գործով զբաղուող Գործադիր Կոմիտէն առանձին դրութեամբ դիմել է Կոմիտէիս, որ յետ այսու փախստականական գործերի համար պէտք է դիմել նոր հիմնուած «Կովկասեան Փախստականական Խորհրդին», որը գործում է Անդրկովկասեան Առանձին Կոմիտէի տնօրինութեամբ։

4) Տիկ. Վ. Հախվերդեանից յօգուտ Նախկին Աստրախանի որբանոցի շնորհակալութեամբ ստացանք ՚ի յիշատակ վաղամեռ ականաւոր բանաստեղծ Ալ. Ծատուրեանի պսակի փոխարէն 100 ռուբլի։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ.

Մայիսի 17-ից մինչև յունիսի 7-ը ալիւր ուղարկուած է Ղարաքիլիսա 4 վ., Իգդիր՝ 8, Վաղարշապատ՝ 7, Աշտարակ՝ 4, Ղուրդուղուլի՝ 4, Ղամառլու՝ 4, Ալէքսանդրապոլ՝ 7, Սարիղամիշ՝ 20, Գանձակ՝ 3, Ղարս՝ 2, Աղստաֆա՝ 4 և Ախալցխայի որբանոցի համար՝ 500 պ., ընդամենը 67 վ. և 500 պ.։

Սապոն ուղարկուած է Բարվանսարա 80 պ., Ղարաքիլիսա՝ 80 և Ղամառլու 100, ընդամենը 260 պ.։

Շաքար ուղարկուած է Գանձակ 280 պ.։

Բրինձ ուղարկուած է Ղարաքիլիսա 460 պ.։

# Քրոնիկոն

Օգոստոս 20-ին Թիֆլիսում պիտի գումարուի ռուսահայերի համագումարը. ընտրութիւնները պիտի կատարուեն յուլիսի 23-ին։ Իւրաքանչիւր 20 տարեկան ռուսահայ առանց սեռի և դաւանանքի խտրութեան իրաւունք ունի ընտրելու և ընտրուելու։ Ընտրութիւնները պիտի կատարուեն ընդհանուր, հաւասար, ուղղակի և գաղտնի քուէարկութեամբ։ 10,000 հոգին պէտք է տայ մէկ պատգամաւոր համագումարի համար։ Քուէարկութեան պիտի մասնակցեն 1,924,300 ռուսահայեր, որոնք պիտի ընտրեն 185 պատգամաւոր։

— Լոնդոնում յօգուտ հայ փախստականների կատարուող հանգանակութիւնը ցայժմ տուել է 101,100 անգլիական ոսկի (1,400,000 ռ.)։

— Ստացանք 1) «Տեղեկագիր և դրամական հաշիւ Բագուի Հայ Գաղթականական Կոմիտէի». 2) «Հաշուեկշիռ ս. Էջմիածնի Եղբայրական Օգնութեան յանձնաժողովի». 3) «Ռուս բիւրոկրատիան և հայերը», Եղիշէ Ա. ք. Գեղամեանի. գինը՝ 50 կ.։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց Արևմտեան ճակատում ռազմական դրութիւնը հանդարտ է, ռուսական զօրաբանակների մեծ մասը տարուած է քաղաքական խնդիրներով, իսկ թշնամին օգտուելով այդ բանից՝ իր զօրքերն ուղարկում է արևմտեան ճակատը։

Ֆրանս.Անգլիական ճակատում կռիւները կատաղի բնոյթ են ստացել։ Չնայելով որ թշնամին կրկնակի կերպով ուժեղացած է, բայց Բրիտանական զօրքերը հաստատուն քայլերով առաջ են գնում։ Արրասի շրջանում մայիսի 29 ի խոշոր յաղթութիւնից յետոյ, անգլիացիները ընդարձակեցին իրենց ռազմաճակատը։ Մեսսինայի ճակատում նրանք վերցրին 211 գերի։ Ֆրանսիացիները Սոմմի վրայ ցոյց տուած իրենց քաջարի տոկունութիւնից յետոյ, պատրաստւում են նոր գրոհների։

Իտալական ճակատում կռիւները եռանդուն բնոյթ են ըստացել։ Աւստրիացիները ռուսական ճակատից իտալական ճակատը փոխադրեցին 90 գումարտակ հետևազօրք և 600 թնդանօթ։

Շուտով տեղի են ունենալու վճռական ճակատամարտեր։

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

Ծուղրուտ (Ախալցխայի գաւ.), 1 յունիսի

Ծուղրուտ գիւղի աղբիւրի ջուրը վարակուած է ջրանցքի պատճառաւ, որը հասարակ մի առու է, վրան հողով ծածկած և ենթակայ այլ և այլ աղտեղութիւններ ընդունելու։

Զանազան հիւանդութիւնների պատճառը բժիշկները վերագրում են ջրին և միանգամայն վտանգաւոր համարում այդ ջըրից խմելը։ Իսկ ամբողջ գիւղի բնակչութիւնը օգտւում է միմիայն այդ աղբիւրից, չունենալով այլ աղբիւր։ Աղբիւրի վերանորոգումը պահանջում է 7000 ռ. ծախս, որ գիւղացու ույժերից միանգամայն վեր է։ Նորոգութեան համար ընտրուած մասնաժողովը դիմում է այլ և այլ հիմնարկութիւններին և բարեգործ անձանց և խնդրում, որ շուտափոյթ օգնութեան հասնեն, առանց այդ էլ յուսահատութեան հասած Ծուղրուտի գիւղացութեան։

Բուժեցէք ձեր լումայով գիւղացու ցաւերը։

Հասցէ՝ Ахалцыхъ, Благотворительное Общество, Хачатуру Телмищяну, յանձնել Ծուղրուտի մասնաժողովի նախագահ՝ Եղ. քհյ. Տէր-Յակոբեանցին։

# ՏԵՂԵԿԱՏՈՒ

Բերկրու կողմից Պատիկ գիւղացի Արշակ Մարկոսեան Տէր-Մաթէոսեանին, Մամբրէ Տէրտէրեանին, Գէորգ Զմոյեանին, Նազար Փոխանեանին և Յարութիւն Սաֆոյեանին փնտռում է Սօնէ Պիտոյեանը Բարվանսարայում։

Հարցնել Արաս-Արաղսկայա պլոշչադ, №7, Կ. Հ. Բարեգ. Ընկերութեան կից Պարենաւորման Բաժանմունքում Ալէքսանդր Աչայեանին։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1

